Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի Բլոկնոտ

## № 6 (25)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք!

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 6 (25)

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945



# ՔԱՂԱՔԱԿԱՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԼԻՈՎԻՆ Ի ՍՊԱՍ ԴՆԵԼ ԳԱՐՆԱՆԱՅԱՆԻ ՀԱՋՈՂ ԱՎԱՐՏՄԱՆԸ

Պատերազմական շրջանի այս չորրորդ գարնանացանը վճռող նշանակություն ունի սովետական ժողովրդին և մեր քաջարի Կարմիր Բանակին սննդով, իսկ արդյունաբերությանը հումքով ապահովելու գործում: Այս տարվա հաղթանակի բերքի ստացումը առաջին հերթին պայմանավորված է գարնանացանի հաջող նախապատրաստումով ու անցկացումով. Կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների, ՄՏ կայանների և սովխոզների, բանվորների ու բանվորուհիների, գյուղատնտեսության բնագավառի աշխատողների ուժերը մոբիլիզացնելու և գարնանացանը ժամանակին ու բարձր որակով ավարտելու համար անհրաժեշտ է գործի դնել պարտիական քաղաքական, ագի-

տայինի-մասսայական աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները:

Չորրորդ տարին է, որ կոլխոզային գյուղացիությունը գարնանացանը սկսում է սովետական ժողովրդի հայրենական մեծ պատերազմի պայմաններում: Պատերազմի առաջին իսկ օրից մեր կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները հանդես բերեցին հայրենասիրական պարտքի մեծության գիտակցում: Անհամեմատ ընդարձակվել է ցանքերի տարածությունը, բարձրացել անասունների մթերատվությունը, իսկ կոլխոզները, կոլխոզնիկները և կոլխոզնիկուհիները ժամանակից շուտ կատարել են պետական բոլոր պարտավորությունները և Կարմիր Բանակի Ֆոնդին հատկացվող մուծումները:

Ներկայումս կոլխոզային գյուղի աշխատավորության և մեր գյուղատնտեսության աշխատանքի մարտական ծրագիրն են հանդիսանում ՍՍՌՄ Ժողկոմսովետի ու Համ. Կ(բ)Պ Կենտկոմի, ինչպես նաև Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի որոշումները՝ 1945 թվի գյուղատնտեսական աշխատանքների պլանի մասին:



Մեր պարտիական և կոմերիտական կազմակերպությունները մոբիլիզացնելով գյուղի աշխատավորությունը, այս տարի անհամեմատ նախապատրաստված սկսեցին գարնանացանը: Շատ շրջաններ, կոլխոզներ և ՄՏ կայաններ ժամանակին ավարտեցին գյուղատնտեսական գործիքների և տրակտորների նորոգումը, պահեստային մասերի հայթայթումը և կատարեցին դաշտերի պարարտացման պլանը: Իրենց օրինակելի աշխատանքով աչքի ընկան Ալավերդու շրջանի՝ Ծաթեր և Կաճաճկուտ, Կիրովականի շրջանի՝ Դսեղ, Գորիսի շրջանի՝ Խնձորեսկ և Քարաշեն գյուղերի պարտիական կազմակերպությունները:

Գարնանացանը նոր է սկսվել և այն տարածվում է ռեսպուբլիկայի մյուս շրջաններում: Անհրաժեշտ է այժմվանից պարտիական, քաղաքական և մասսայական աշխատանքը լծել ի սպաս դնել նրա հաջող ավարտմանը:

Գյուղական պարտիական կազմակերպությունները որոշ ձեռնարկումներ են արել ծավալելու քաղաքական-մասսայական աշխատանքը գարնանացանի ժամանակ: Բոլոր շրջաններում տեղի են ունեցել ագիտատորների, ագիտկոլեկտիվների ղեկավարների և

200 սայլ տեղական պարարտանյութ։ Գառնիի շրջանի Բարաշեն գյուղի կոլխոզը սոցիալիստական մրցության մեջ է մտել հարևան գյուղի կոլխոզի հետ և պարտավորություն ստանձնել գարնանացանն ավարտել ժամկետից շուտ։ Այժմ Բարաշենի կոլխոզի յուրաքանչյուր բրիգադայում, օղակում ծավալվում է սոցիալիստական մրցություն։

Գարնանացանի ընթացքում կարևոր դեր ունեն կատարելու գյուղական քաղ-լուսհիմնարկները, ակումբները, գրադարանները, ընթերցարանները և շրջանային պարբերականները։ Անհրաժեշտ է լայնորեն ծավալել մասսայական-քաղաքական աշխատանքը և ագրոտեխնիկական պրոպագանդան։ Ամենօրյա բարձրաձայն ընթերցանության միջոցով մասսայականացնել Սովետական ինֆորմբյուրոյի հաղորդագրությունները, ռազմաճակատային էպիզոդները, մամուլում հրապարակված գյուղատնտեսական գիտա-պոպուլյար և բնագիտական հոդվածներ, սիստեմատիկաբար կազմակերպել ինքնագործ խմբակների ելույթներ։ Մեծ տեղ պետք է տրվի դաշտում ցուցադրական ագիտացիայի կազմակերպմանը։



Երիտասարդության մեջ տարվող ագրոտեխնիկական պրոպագանդան նույնպես կարևոր նշանակություն ունի։ Գարնանացանի հաջող ավարտումը մեծ մասամբ կախված է գյուղի կոմերիտական և արհմիութենական երիտասարդության աշխատանքից։ Անհրաժեշտ է երիտասարդության մեջ մասսայականացնել բարձր բերքի առաջավոր օղակների հարուստ փորձը։ Այդ տեսակետից օրինակելի աշխատանք է կազմակերպել Նոր Բայազետի շրջանի Ղշլաղ գյուղի կոլխոզային ակումբը։ Ակումբին կից գործող ագրոտեխնիկական խմբակի պարապմունքներին մասնակցում են կոմերիտականները, կոլխոզնիկները ու կոլխոզնիկուհիները։ Նրանք զրույցներ են լսել գարնանացանի հաջող նախապատրաստման, բարձր բերքի ստացման, ագրոտեխմինիմումի, բարձր բերքի երիտասարդական օղակների և այլ հարցերի շուրջը։

Գարնանացանի ժամանակ խոշոր աշխատանք ունեն կատարելու ռեսպուբլիկական, շրջանային թերթերն ու ռադիոկայանները։ Նրանք պետք է սիստեմատիկաբար լուսաբանեն գարնանացանի ընթացքը, մասսայականացնեն առաջավոր բրիգադաների, օղակ-

ների, կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների, ՄՏ կայանների, բանվորների, բանվորուհիների և ագրոնոմների փորձը:

Կոլխոզային գյուղի աշխատավորության քաղաքական դաստիարակության գործում մեծ դեր ունեն կատարելու կինոն և թատրոնները: Անհրաժեշտ է գարնանացանի ժամանակ ապահովել կինոցուցադրումները, գործի դնել եղած կինոսարքավորումները, կազմակերպել կինո-ֆեստիվալներ:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը գարնանացանի ժամանակ քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպման մասին ընդունած իրենց որոշումներում պարտիական և կոմերիտական կազմակերպություններից և ագիտատորներից պահանջում են օրինակելի կերպով կազմակերպել աշխատանքը, հաջողությամբ ավարտել պատերազմական տարվա գարնանացանը և դրանով իսկ ապահովել հաղթանակի առատ բերքի ստացումը:

---



# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂԿՈՄՍՈՎԵ-ՏՈՒՄ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը ընդունեցին հետևյալ որոշումը. «Հայկական ՍՍՌ-ում գյուղատնտեսական աշխատանքների 1945 թվի պլանի մասին»:

1. Հաստատել գյուղատնտեսական աշխատանքների 1945 թվի պլանը հետևյալ ցուցանիշներով.

## 1. ՑԱՆՔԱՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԾՈՎ

### Ա. ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ

ա) Հացահատիկային կուլտուրաներ—ընդամենը 352,4 հազար հեկտար:

Այդ թվում՝

| | | | |
|---|---|---|---|
| աշնանացան | 192,0 | հազ. | հեկտ. |
| գարնանացան | 160,4 | » | » |
| Դրանցից՝ | | | |
| ցորեն | 65,0 | » | » |
| գարի | 72,0 | » | » |

կորեկ 2,0 հազ. հեկտ.
վարսակ 1,0 » »
վիկա սերմի համար 1,0 » »
եգիպտացորեն 2,0 » »
բրինձ 0,9 » »
լոբազգի հացահատիկայիններ 5,0 » »

Այդ թվում՝

լոբի 2,0 » »
ոսպ 1,0 » »
այլ լոբազգի հացահատիկայիններ 2,0 » »

բ) Տեխնիկական կուլտուրաներ — ընդամենը 36,0 հազար հեկտար:

Այդ թվում՝

բամբակենի 13,5 հազ. հեկտ.
ծխախոտ 8,0 » »
շաքարի ճակնդեղ 3,0 » »
գանգրավուշ 10,0 » »
արևածաղիկ 1,0 » »
խորդենի 0,2 » »
դալմաթյան երիցուկ 0,3 » »

գ) Կերաբույսեր — ընդամենը 40,3 հազ. հեկտ.

Այդ թվում՝

միամյա խոտաբույսեր 1,5 » »



սիլոսային կուլտուրաներ 1,8 հազ. հեկտ.
արմատապտուղներ 2,0 » »
բազմամյա խոտաբույսերի հնձի տարածությունը՝ նախորդ տարիների ցանքերի հետ 35,0 » »

դ) Բոստանա-բանջարանոցային կուլտուրաներ — ընդամենը 22,3 հազ. հեկտ.

Այդ թվում՝

կարտոֆիլ 14,8 » »
բոստան 1,5 » »
բանջարեղեն 6,0 » »

Դրանցից՝

կաղամբ 2,0 » »
սոխ և սխտոր 0,8 » »

ե) Ընդամենը գարնանացան կուլտուրաների ցանքեր՝ նախորդ տարիների խոտաբույսերի հետ միասին 259,0 » »

զ) Ընդամենը գարնանացան և աշնանացան կուլ-

տուրաներ 451,0 հազ. հեկտ.

է) Բացի դրանից, բազմամյա խոտաբույսերի ենթացանք 15,0 » »

ը) Հացահատիկային կուլտուրաների աշնանացան ցանք՝ 1946 թ. բերքի համար 180,0 » »

### Բ. ԿՈԼԽՈԶՆԻԿՆԵՐԻ ՏՆԱՄԵՐՁ ՀՈՂԱՄԱՍԵՐՈՒՄ

ա) կարտոֆիլի ցանք 6,0 հազ. հեկտ.

### Գ. ԱՆՀԱՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

ա) Գարնանացան հացահատիկային կուլտուրաներ 0,1 հազ. հեկտ.

### 2. ԲԱԶՄԱՄՅԱ ՏՆԿԻՆՆԵՐԻ ՏՆԿՈՒՄԸ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ

ա) Խաղողի նոր այգիներ 1000 հեկտար

Այդ թվում՝

գարնանը 600 »

աշնանը 400 »

բ) Խաղողի տնկարաններ 100 »



գ) Պտղատու նոր այգիներ 700 հեկտար

Այդ թվում՝

գարնանը 200 »

աշնանը 500 »

դ) Պտղատու ծառերի տնկարաններ 100 »

Այդ թվում՝

Հողժողկոմատի պետական տնկարաններ 20 »

ե) Հատապտղային տնկիներ 10 »

### 3. ԹԹԱՍՏԱՆՆԵՐ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ

Թթենու ցանք 10 հեկտար

Թթենու սերմնադաշտեր 20 »

Այդ թվում՝

գարնանը 10 »

Թթաստաններ 100 »

բնավոր թթենի գարնանը 500 հազար հատ։

### 4. ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ԱՆՑԿԱՑՈՒՄԸ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ

ա) Մաքուր ցել 95,0 հազ. հեկտ.

բ) ցրտահերկ 150,0 » »

գ) հացահատիկի

ցանք յարովիզացված սերմերով 20,0 հազ. հեկտ.

դ) կարտոֆիլի ամառային ցանք 1,0 » »

ե) գոմաղբա-մոխրային պարարտանյութերի փոխադրում 1,5 մլն. տոննա

զ) լոբազգի կուլտուրաների նիտրոգենացում 10,0 հեկտար։

## 5. ԿԵՐԱԲՈՒՅՍԵՐԻ ՍԵՐՄՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ

Բազմամյա խոտաբույսերի սերմնանոցներ պահելը 10,0 հազ. հեկտ.

Այդ թվում՝

| | | |
|---|---|---|
| կորնգան | 8,9 | » » |
| առվույտ | 1,0 | » » |
| երեքնուկ | 0,1 | » » |

## 6. ԲԱՆՋԱՐԱՆՈՑԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԵՎ ԿԵՐԻ ԱՐՄԱՏԱՊՏՈՒՂՆԵՐԻ ՍԵՐՄՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ

ա) Բանջարանոցային կուլտուրաների սերմնանոցներ պահել սերմնաբուծական կոլխոզներում 420 հեկտար



Այդ թվում՝

երկամյա կուլտուրաներ 115 հեկտար

բ) Կերի արմատապտուղներ 200 »

Այդ թվում՝

անկում 100 »

---

7. Հասատատել կոլխոզների հիմնական գյուղատնտեսական կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվության հետևյալ պլանը.

Հացահատիկային կուլտուրաներ (գարնանացան և աշնանացան), միջին բերքատվությունը 9,5 ցենտներ

Այդ թվում՝

| | | |
|---|---|---|
| ոռոգելի հողերում | 15,0 | » |
| բամբակենի | 13,0 | » |
| ծխախոտ | 7,0 | » |
| շաքարի ճակնդեղ | 160,0 | » |
| արևածաղիկ | 8,0 | » |
| կանեփասերմ | 3,0 | » |
| կարտոֆիլ | 80,0 | » |
| խաղող | 70,0 | » |
| կորիզավոր պտուղներ | 60,0 | » |
| սերմավոր պտուղներ | 50,0 | » |
| սիլոսային | 95,0 | » |
| բազմամյա խոտաբույսեր | 30,0 | » |
| միամյա խոտաբույսեր | 20,0 | » |
| բնական խոտհարքների խոտ | 13,0 | » |

| | | |
|---|---|---|
| կերի արմատապտուղներ | 200,0 | ցենտներ |
| կորնգանի սերմ | 4,5 | » |
| առվույտի սերմ | 1,5 | » |
| երեքնուկի սերմ | 1,5 | » |

8. Հաստատել տրակտորային աշխատանքների պլանը (առանց կալսումի) 325,0 հազար հեկտար պայմանական հերկի ծավալով, այդ թվում գարնանավար-կրկնավար 65,0 հազար հեկտար։

| | | | |
|---|---|---|---|
| նախացանքային կուլտիվացիա | 10,0 | հազ. | հեկտ. |
| գարնանացանի շարքացան | 25,0 | » | » |
| ցելահերկ | 35,0 | » | » |
| ցելի կուլտիվացիա | 20,0 | » | » |
| շարահերկ բույսերի կուլտիվացիա | 50,0 | » | » |
| բերքահավաք կոմբայններով | 35,0 | » | » |
| աշնանացան կուլտուրաների ցանք | 35,0 | » | » |
| ցրտահերկ | 65,0 | » | » |
| կալսում | 70,0 | հազ. | տոննա |

9. Հանձնարարել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ մինչև 1945 թվի մարտի 5-ը գյուղատնտեսական աշխատանքների 1945



թվի պլանը հասցնել առանձին շրջաններին և ՄՏԿ-ներին։

Հանձնարարել շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին, շրջանային հողբաժինների վարիչներին և ՄՏԿ-ների դիրեկտորներին՝ 3 օրվա ժամկետում 1945 թվի պլանները հասցնել յուրաքանչյուր կոլխոզի, կոլխոզնիկի և անհատական տնտեսության։

10. Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը պարտավորեցնում են Հողժողկոմատին, շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին, շրջանային հողբաժիններին և ՄՏԿ-ների դիրեկտորներին՝ ապահովել մեքենատրակտորային կայանների ժամանակին նախապատրաստումը գարնանացանին և գարնան գյուղատնտեսական աշխատանքների կազմակերպված անցկացումը՝ որակական բարձր ցուցանիշներով։ Այդ նպատակով՝

ա) մինչև գյուղատնտեսական աշխատանքները սկսվելը, շրջկոմի քարտուղարից, շրջգործկոմի նախագահից, շրջհողբաժնի վարիչից և մյուս ՄՏԿ-ի դիրեկտորից բաղկացած հանձնաժողովների միջոցով, պետական ստուգման ենթարկել, թե ինչ չափով պատրաստ է յուրաքանչյուր ՄՏԿ

գարնան դաշտային աշխատանքներին, հատուկ ուշադրություն նվիրելով կադրերի ճիշտ տեղաբաշխմանը տրակտորային բրիգադաներում, բրիգադաների կոմպլեկտավորմանը և նրանց ապահովմանը կցվող և յուղ ու վառելանյութ լցնող ինվենտարով, գործիքներով, տակառներով, պահեստի մասերով և ՄՏԿ-ների նախապատրաստմանը դաշտում տրակտորների տեխնիկական սպասարկմանը.

բ) ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշմանը համապատասխան, որպես կանոն, սահմանել, որ նոր պատրաստված տրակտորիստներին պետք է թույլ տալ ինքնուրույն աշխատանք կատարել միայն այն բանից հետո, երբ նրանք 3 շաբաթվա ստաժ են անցել դաշտային աշխատանքներում ավագ տրակտորիստի ղեկավարությամբ.

գ) լայնորեն արմատավորել առաջավոր տրակտորային բրիգադաների և կոլխոզների փորձը՝ տրակտորային բրիգադաներում՝ տեղական շինանյութերից՝ տրակտորիստների և կոլխոզնիկների ուժերով, տրակտորները տեխնիկապես խնամելու համար ամենահասարակ արհեստանոցներ ու ծածկեր և, բրիգադաներում վառելանյութ պահելու համար,



ամենահասարակ նկուղներ կառուցելու ասպարեզում.

դ) կոլխոզների հետ կնքված պայմանագրերին համապատասխան, 1945 թվի ապրիլի 1-ից ոչ ուշ, յուրաքանչյուր տրակտորային բրիգադայի համար սահմանել տրակտորային աշխատանքի տարեկան առաջադրանքներ՝ մատնանշելով կոլխոզները, տրակտորային աշխատանքների տեսակները և դրանց կատարման ժամկետները. կազմել աշխատանքային պլաններ գարնան դաշտային աշխատանքների ժամանակաշրջանի համար, ինչպես նաև հանձնել տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների տեխնիկական խնամքի գրաֆիկ՝ ըստ գյուղատնտեսական աշխատանքների ժամանակաշրջանների.

ե) մինչև գարնանացանի սկսվելը դաշտային աշխատանքների ամբողջ ժամանակաշրջանի համար, որպես կանոն, խոշոր կոլխոզներում տրակտորային բրիգադաները ամրացնել դաշտավարական բրիգադաներին, իսկ փոքր կոլխոզներ սպասարկելիս՝ մեկ կամ մի խումբ կոլխոզների.

զ) 1945 թվի համար պահպանել պարգևների վճարումը տրակտորիստներին՝ գարնանացանի ժամանակաշրջանում սահման-

-ված 15 օրվա առաջադրանքները կատարելու համար, ինչպես նաև պահպանել տրակտորիստների աշխօրերի կրկնակի չափով գրանցումը և հերկի աշխատանքի առաջին վեց օրում վառելանյութի ծախսման նորմայի 10 տոկոսի բարձրացումը։

է) ապահովել վառելանյութի ՄՏԿ փոխադրելը գարնան դաշտային աշխատանքները սկսվելուց առաջ, օգնություն ցույց տալով ՄՏԿ-ներին ավտոմոբիլային ու սայլային տրանսպորտով, բեռնելով գյուղատնտեսական մթերքների փոխադրումով զբաղված տրանսպորտը ետ վերադառնալիս։

11. Պարտավորեցնել շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին, շրջանային հողբաժիններին և կոլխոզների վարչություններին՝

ա) մինչև գարնան աշխատանքների ըսկսվելը լրիվ քանակությամբ ապահովել յուրաքանչյուր կոլխոզում հացահատիկային, տեխնիկական, բանջարանոցային, կերի կուլտուրաների, կարտոֆիլի սերմացուն ինչպես նաև անհրաժեշտ չափով սածիլների պաշար գարնանացանի պլանը կատարելու համար, խիստ վերահսկողություն սահմանելով սերմֆոնդերի որակի ու պահ-



պանության նկատմամբ.

բ) մինչև մարտի 15-ը ցանքի համար ոչ պիտանի կամ սովորական սերմերը փոխանակել սորտային սերմերով.

գ) յուրաքանչյուր կոլխոզում լիովին զըտել, տեսակավորել և սահմանված կոնդիցիաներին հասցնել բոլոր կուլտուրաների սերմֆոնդերը, ինչպես նաև ժամանակին ստուգել սերմերի ծլունակությունը, խոնավությունը, աղտոտվածությունը և հիվանդություններով ու վնասատուներով վարակված լինելը։

12. Պարտավորեցնել շրջսովետների գործկոմներին և պարտիայի շրջկոմներին՝

ա) դաշտային աշխատանքները սկսվելուց երկու շաբաթ առաջ ստուգում կազմակերպել, թե գարնանացանին ինչ չափով պատրաստ է յուրաքանչյուր կոլխոզը, լայնորեն կիրառելով փոխադարձ ստուգումը.

բ) հանձնարարել կոլխոզներին՝ քաշող ուժը պակաս լինելու դեպքում թեև դաշտային ու փոխադրական աշխատանքների ասպարեզում օգտագործել կոլխոզների ու կոլխոզնիկների սակավ կաթնատու կովերին՝ ապահովելով նրանց հոգատար խնամքը։

Կոլխոզնիկների առանձնացված կովերը որպես կանոն, պետք է աշխատեցնեն այն կոլխոզնիկները, որոնց պատկանում են այդ կովերը։

Դաշտային փոխադրական աշխատանքներում կոլխոզնիկների կովերն օգտագործելիս, ապահովել անհրաժեշտ քանակությամբ կոշտ կերի հատկացումը այդ կովերի համար։

13. Պարտավորեցնել շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին, կոլխոզների վարչություններին և սովխոզների դիրեկտորներին՝ ապահովելու կոլխոզների և սովխոզների տերիտորիայում ապրող ամբողջ աշխատունակ բնակչության, կոլխոզնիկների ու նրանց ընտանիքների անդամների, սովխոզների բանվորների ու ծառայողների և նրանց ընտանիքների անդամների, ինչպես նաև արդյունաբերության և տրանսպորտի աշխատանքում չզբաղված ոչ կոլխոզնիկ մյուս աշխատունակ բնակչության պարտադիր մասնակցությունը գյուղատնտեսական աշխատանքներին։

14. ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշմանը համապատասխան, դաշտային աշխատանքներն սկսվելուց մեկ ամիս առաջ ազատել կոլխոզները աշխատալ



պարհակից և արգելել առանց ՍՍՌՄ Ժողկոմսովետի թույլտվության որևէ մոբիլիզացիայի ենթարկել կոլխոզների քարշող ուժը։

Ոչ ուշ, քան դաշտային աշխատանքները սկսվելուց 3 շաբաթ առաջ, կազմակերպել կենդանի քարշող ուժի ուժեղ կերակրումը և հանգիստը։ Կոլխոզների կենդանի քարշող ուժի ապօրինի մոբիլիզացման համար մեղավոր անձանց ենթարկել քրեական պատասխանատվության։

15. Պարտավորեցնել Հողժողկոմատին, շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին, շրջանային հողբաժիններին, ՄՏԿ-ների և սովխոզների դիրեկտորներին, կոլխոզների վարչություններին՝ մինչև գարնան դաշտային աշխատանքները սկսելը յուրաքանչյուր կոլխոզում և սովխոզում ագրոնոմիական անձնակազմի ուժերով մշակել ագրոտեխնիկական կոնկրետ միջոցառումներ՝ գարնանացանը կատարելու և 1945 թվի ցանքերը խնամելու համար։

Արգելել, ում էլ որ լինի, ագրոնոմների հետ միասին կոլխոզների սահմանած ագրոտեխնիկական միջոցառումների վերացումը կամ փոփոխումը՝ առանց այդ միջոցառումները սահմանած ագրոնոմի գիտության

կամ առանց շրջանային հողբաժնի գլխավոր ագրոնոմի, իսկ սովխոզներում՝ տրեստի գլխավոր ագրոնոմի թույլտվության։

16. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, պարտիայի շրջկոմներին, շրջսովետների գործկոմներին և շրջանային հողբաժիններին՝ ապահովել յուրաքանչյուր կոլխոզում ամեն մի կուլտուրայի սահմանված չափով սերմնադաշտերի հատկացումը գարնանացանը սկսելուց առաջ և այդ սերմնադաշտերի ամրացումը առանձին օղակներին, բարձր ագրոտեխնիկայի կիրառումը սերմնադաշտերում և առանձնացված բոլոր սերմնադաշտերը ձևակերպել համապատասխան ակտերով։

Կոլխոզներում սերմնադաշտերը ճիշտ առանձնացնելու և սահմանված ագրոտեխնիկան պահպանելու համար պատասխանատվությունը դնել շրջանային հողբաժինների սերմնաբույծ ագրոնոմների և կոլխոզների նախագահների վրա։

17. Խոտադաշտային ճիշտ ցանքաշրջանառությունները ամենաարագ յուրացնելու նպատակով, 1945 թվին ապահովել սահմանված չափով բազմամյա կերաբույսերի սերմնանոցների ժամանակին առանձնացումը յուրաքանչյուր կոլխոզի լավագույն



հողամասերից, սահմանելով դրանց պատշաճ խնամքը և ապահովել բազմամյա խոտերի լավորակ սերմերի բարձր բերքի ստացումը։

18. Ռոռգիչ սիստեմը ոռոգման համար ժամանակին նախապատրաստելն ապահովելու և գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգումը կազմակերպված անցկացնելու նպատակով, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը պարտավորեցնում են Հայկական ՍՍՌ Ջրտնտժողկոմատին, Հողժողկոմատին և շրջսովետների գործկոմներին՝

ա) ապահովել ոռոգիչ առուները մաքրելու և վերանորոգելու աշխատանքի լավորակ կատարումը հետևյալ ժամկետներում՝ դաշտային շրջաններում՝ մինչև ապրիլի 1-ը, նախալեռնային գոտու շրջաններում՝ մինչև ապրիլի 15-ը, լեռնային գոտու շրջաններում՝ մինչև մայիսի 1-ը.

բ) մինչև մարտի 20-ը մշակել և հաստատել ըստ առանձին ոռոգիչ սիստեմների ու շրջանների, գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգման դիֆերենցված նորմաներ ու ժամկետներ, հաշվի առնելով հողային պայմանները, ագրոտեխնիկան և բերքատվությունը։

Այն շրջաններում, որտեղ ստորերկրյա ջուրը բարձր մակարդակ ունի, վերանայել ոռոգման նորմաները՝ դրանք նվազեցնելու ուղղությամբ և խիստ վերահսկողություն հաստատել սահմանված նորմաները անպայման կատարվելու վրա.

գ) ջուրը բաց թողնելու համար սահմանված լիմիտներին համապատասխան, կազմել և հաստատել միջշրջանային և միջկոլխոզային ջրաբաշխման պլանները,— դաշտային սիստեմում՝ մինչև ապրիլի 1-ը, նախալեռնային գոտու սիստեմում՝ մինչև ապրիլի 15-ը, լեռնային գոտու սիստեմում՝ մինչև մայիսի 5-ը։ Ներկոլխոզային և ներսովխոզային ջրօգտագործման պլանները կազմել ու հաստատել դաշտային գոտու սիստեմներում մինչև ապրիլի 10-ը, նախալեռնային գոտու սիստեմներում՝ մինչև ապրիլի 25-ը, լեռնային գոտու սիստեմներում՝ մինչև մայիսի 15-ը.

դ) առուներից ջուրը բաց թողնել այն լիմիտներին համապատասխան, որոնք հաստատվել են ջրօգտագործման պլանների հիման վրա, հաշվի առնելով ոռոգման աղբյուրների ջրատարողությունը և ոռոգվող հողերի մելիորատիվ վիճակը։

19. Պարտավորեցնել Հայկական ՍՍՀ

Հավելված № 1

Աղյուսակ № 1

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ՑԱՆՔԱՏԱՐԱԾՈՒԹՅԱՆ 1945 ԹՎԻ ՊԼԱՆԸ

| ՇՐՋԱՆՆԵՐ | Ընդամենը | ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆՆԵՐ — այդ թվում | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | Աշնանացան | Գարնանացան | Որոնցից | | Կորեկ | Վիկա հացահատիկի վրա | Գարի | Վարսակ | Եգիպտացորեն | Բրինձ | Լոբազգի հացահատիկայիններ | Որոնցից | | |
| | | | | Ցորեն | Հաճար | | | | | | | | Լոբի | Ոսպ | Սիսեռ, ոլոռ և այլն |
| 1. Ալինի | 11520 | 6500 | 5020 | 3000 | — | — | — | 1970 | — | — | — | 50 | — | 20 | 30 |
| 2. Ազիզբեկովի | 10300 | 4892 | 5408 | 3200 | 458 | 200 | — | 1500 | — | — | — | 50 | 10 | 10 | 20 |
| 3. Ալավերդու | 6700 | 5400 | 1300 | 200 | 110 | 30 | 20 | 650 | 100 | 150 | — | 40 | 20 | 20 | — |
| 4. Ալագյազի | 9300 | 2600 | 6700 | 1000 | 170 | — | — | 5500 | — | — | — | 30 | — | 20 | 10 |
| 5. Ամասիայի | 9100 | 2200 | 6900 | 3000 | — | — | 10 | 3880 | — | — | — | 10 | — | 5 | 5 |
| 6. Ապարանի | 10600 | 5300 | 5300 | 3600 | 500 | — | — | 1000 | — | — | — | 200 | — | 150 | 50 |
| 7. Արթիկի | 12730 | 6900 | 5830 | 2700 | 10 | — | 30 | 2970 | — | — | — | 120 | — | 10 | 110 |
| 8. Ախտայի | 15000 | 6196 | 8804 | 3700 | 1000 | — | 20 | 3884 | — | — | — | 200 | 10 | 100 | 90 |
| 9. Աշտարակի | 13800 | 10200 | 3600 | 1000 | 250 | 100 | — | 1300 | — | — | — | 950 | 500 | 100 | 250 |
| 10. Բասարգեչարի | 18900 | 8350 | 10550 | 5400 | 50 | 30 | — | 5020 | — | — | — | 50 | — | 10 | 40 |
| 11. Բերիայի անվան | 1300 | 1100 | 200 | — | 5 | — | — | 165 | — | — | — | 30 | 5 | — | 25 |
| 12. Վաղարշապատի | 4600 | 2807 | 1793 | 500 | — | 50 | — | 483 | — | 40 | 280 | 440 | 390 | 10 | 40 |
| 13. Վեդու | 4700 | 3506 | 1194 | — | — | 50 | — | 934 | — | 30 | — | 180 | 150 | — | 30 |
| 14. Գորիսի | 14100 | 9100 | 5000 | 500 | 2650 | 100 | — | 1450 | — | — | — | 300 | 70 | 100 | 120 |
| 15. Ղուկասյանի | 9100 | 1932 | 7168 | 2700 | 50 | — | 10 | 4398 | — | — | — | 10 | — | — | 10 |
| 16. Դիլիջանի | 2500 | 2000 | 500 | — | 50 | 150 | — | 160 | — | 120 | — | 20 | 15 | 5 | — |
| 17. Դուզքենդի | 16050 | 7672 | 8378 | 5500 | — | — | 10 | 2818 | — | — | — | 50 | 10 | 20 | 20 |
| 18. Զանգիբասարի | 2000 | 1000 | 1000 | — | — | — | — | 430 | — | 30 | 510 | 30 | 20 | — | 10 |
| 19. Իջևանի | 5600 | 4500 | 1100 | — | 320 | 100 | 10 | — | — | 650 | — | 20 | 15 | 5 | — |
| 20. Կալինինոյի | 6050 | 3411 | 2639 | 800 | 194 | — | 340 | 650 | 650 | — | — | 5 | — | — | 5 |
| 21. Ղարաբաղլարի | 7550 | 4000 | 3550 | 2500 | 50 | — | — | 900 | — | — | — | 100 | 25 | — | 75 |
| 22. Ղամարլուի | 3400 | 2573 | 827 | — | — | — | — | 417 | — | 120 | 110 | 180 | 150 | — | 30 |
| 23. Ղափանի | 11300 | 7000 | 4300 | 1400 | 870 | 400 | — | 1500 | — | 30 | — | 100 | 60 | 20 | 20 |
| 24. Կիրովականի | 4600 | 3050 | 1550 | 100 | 100 | — | 30 | 1290 | — | — | — | 30 | 10 | 10 | 10 |
| 25. Կոտայքի | 17800 | 9191 | 8609 | 4200 | 200 | 20 | 20 | 3509 | — | — | — | 550 | 200 | 130 | 220 |
| 26. Կրասնոսելսկի | 9000 | 4244 | 4756 | 1000 | 50 | 200 | 10 | 3216 | — | 250 | — | 30 | 15 | 5 | 10 |
| 27. Մարտունու | 14000 | 5987 | 8013 | 4000 | 200 | — | 10 | 3773 | — | — | — | 30 | — | 10 | 20 |
| 28. Մեղրու | 3000 | 1700 | 1300 | 700 | 60 | 30 | — | 400 | — | 60 | — | 50 | 50 | — | — |
| 29. Միկոյանի | 11300 | 6729 | 4571 | 1200 | 500 | 350 | 20 | 2196 | — | 70 | — | 235 | 5 | 30 | 200 |
| 30. Նոյեմբերյանի | 6300 | 5350 | 950 | 200 | 340 | 80 | — | 170 | — | 100 | — | 60 | 40 | 15 | 5 |
| 31. Նոր Բայազետի | 10900 | 5514 | 5386 | 1500 | 256 | — | 10 | 3600 | — | — | — | 20 | — | 10 | 10 |
| 32. Հոկտեմբերյանի | 3900 | 3000 | 900 | 200 | — | — | — | 555 | — | 70 | — | 75 | 75 | — | — |
| 33. Սևանի | 7700 | 2800 | 4900 | 2500 | 270 | — | 10 | 2100 | — | — | — | 20 | — | 10 | 10 |
| 34. Սիսիանի | 18800 | 9523 | 9277 | 3800 | 1480 | — | — | 3482 | — | — | — | 515 | 85 | 100 | 330 |
| 35. Սպիտակի | 10250 | 4900 | 5350 | 1200 | 200 | — | 20 | 3830 | — | — | — | 100 | 10 | 30 | 60 |
| 36. Ստեփանավանի | 5750 | 4625 | 1125 | 50 | 50 | — | 400 | 305 | 250 | 20 | — | 50 | 25 | 10 | 15 |
| 37. Թալինի | 14200 | 9000 | 5200 | 3550 | — | 50 | 10 | 1540 | — | — | — | 50 | 20 | 30 | — |
| 38. Շամշադինի | 8700 | 7405 | 1295 | — | 900 | 50 | 10 | 55 | — | 260 | — | 20 | 15 | 5 | — |
| Ընդամենը Հայկական ՍՍՌ-ում | 352400 | 192157 | 160243 | 65000 | 11343 | 2000 | 1000 | 72000 | 1000 | 2000 | 900 | 5000 | 2000 | 1000 | 2000 |

Հողժողկոմատին, տեխնիկական կուլտուրաների շրջանների շրջանավետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին ու շրջանային հողբաժիններին՝

ա) ապահովել գարնան կրկնակի հերկը այն դաշտերում, որոնք հատկացված են բամբակենու ցանքերի համար և որտեղ ցրտահերկ չի կատարվել, իսկ ցրտահերկ եղած հողամասերում կատարել կրկնավար, չիզելացնելով խիստ պնդացած հողերը.

բ) ապահովել բամբակենու վեգետացիոն ոռոգումը բացառապես ակոսներով, ըստ սահմանված նորմաների, թույլ չտալով, որ ոռոգումից հետո հողը չորանա.

գ) շաքարի ճակնդեղի համար հատկացնել ցրտահերկ կատարված, մոլախոտերով չաղբոտած, լավագույն հողամասեր՝ ապահովելով դրանց ժամանակին բարձրորակ կրկնավարը, նախօրոք պարարտացնելով դրանք հանքային պարարտանյութերով.

դ) ծխախոտ տնկել, որպես կանոն, ցրտահերկ կատարված հողում, իսկ ցրտահերկը պակասելու դեպքում՝ գարնանը հերկված և լավ մշակված հողամասերում, անպայման կրկնահերկ կատարելով։

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՍԵՐՄՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Հայկական ՍՍՌ կոլխոզներում հացահատիկային կուլտուրաների սորտային ցանքերն էլ ավելի ընդարձակելու, ինչպես նաև դրանց սերմնաբուծությունը բարելավելու նպատակով, ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետի որոշման համապատասխան, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետն ընդունեց հետևյալ որոշումը.

1. Հայկական ՍՍՌ կոլխոզներում հացահատիկային կուլտուրաների սորտային ցանքերի 1945 թվի պլանը սահմանել 264,3 հազար հեկտար, կամ հացահատիկային կուլտուրաների ցանքերի ընդհանուր տարածության 75 տոկոսը, բաշխելով հետևյալ կերպ ըստ շրջանների.

| | | |
|---|---|---|
| Դուզքենդ | 13.000 | հեկտ. |
| Աղին | 11.520 | » |



| | | |
|---|---|---|
| Արթիկ | 12.000 | հեկտ. |
| Ամասիա | 7.500 | » |
| Ղուկասյան | 7.000 | » |
| Սպիտակ | 9.000 | » |
| Կիրովական | 3.000 | » |
| Ալավերդի | 4.500 | » |
| Կալինինո | 4.300 | » |
| Ստեփանավան | 5.200 | » |
| Նոյեմբերյան | 5.500 | » |
| Շամշադին | 8.000 | » |
| Իջևան | 2.600 | » |
| Դիլիջան | 1.100 | » |
| Ղափան | 9.000 | » |
| Գորիս | 7.000. | » |
| Սիսիան | 8.800 | » |
| Ազիզբեկով | 5.200 | » |
| Ապարան | 8.500 | » |
| Ալագյազ | 8.200 | » |
| Միկոյան | 9.600 | » |
| Մեղրի | 3.000 | » |
| Ախտա | 11.000 | » |
| Նոր Բայազետ | 5.000 | » |
| Սևան | 7.000 | » |
| Բասարգեչար | 14.200 | » |
| Մարտունի | 7.000 | » |
| Կրասնոսելսկ | 8.200 | » |
| Էջմիածին | 4.200 | » |

| | | |
|---|---|---|
| Հոկտեմբերյան | 2.200 | հեկտ. |
| Աշտարակ | 12.530 | » |
| Կոտայք | 12.000 | » |
| Թալին | 9.200 | » |
| Ձանգիբասար | 2.000 | » |
| Վեդի | 4.700 | » |
| Ղամարլու | 2.700 | » |
| Ղարաբաղլար | 7.550 | » |
| Բերիա | 1.300 | » |

2. Սորտային սերմերի արտադրությունը կոլխոզներին մոտեցնելու համար, լրացուցիչ կերպով կազմակերպել հացահատիկային կուլտուրաների սերմնաբուծական 10 նոր տնտեսություն հետևյալ շրջաններում՝ Ղափանի, Շամշադինի, Ալավերդու, Նոր Բայազետի, Մարտունու, Ղարաբաղլարի, Ալագյազի, Ազիզբեկովի, Հոկտեմբերյանի և Աղինի շրջաններում։

Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, վերոհիշյալ շրջանների սովետների գործկոմների հետ միասին, մինչև ս. թ. ապրիլի 15-ը կազմել կոլխոզների ցուցակը և ներկայացնել Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին՝ դրանք իբրև շրջանային սերմնաբուծական տնտեսություններ հաստատելու համար։

3. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ



Հողժողկոմատին և Ղափանի, Շամշադինի, Ալավերդու, Նոր Բայազետի, Մարտունու, Ղարաբաղլարի, Ալագյազի, Ազիզբեկովի, Հոկտեմբերյանի և Աղինի շրջանների սովետների գործկոմների նախագահներին՝ 1945 թվի ընթացքում նշված շրջանային 10 սերմնաբուծական տնտեսություններում լրիվ ավարտել հողաշինարարական աշխատանքները՝ 1945 թվի աշնանից այդտեղ ճիշտ ցանքաշրջանառություններ մտցնելու համար, ինչպես նաև վերականգնել ցանքաշրջանառությունները շրջանային սերմնաբուծական տնտեսություններում, որտեղ դրանք խախտվել են։

4. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, շրջսովետների գործկոմների նախագահների հետ միասին՝ ամեն տարի, նոյեմբերի 15-ից ոչ ուշ, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին ներկայացնել սերմնաբուծական յուրաքանչյուր կոլխոզում սորտային սերմեր աճեցնելու պլանը, ինչպես նաև յուրաքանչյուր կոլխոզի համար շրջանային գործկոմների կողմից նախապես կնքված սորտերի նորոգման պլան՝ գլխավոր ագրոնոմի, շրջանային հողբաժնի սերմնաբույծ ագրոնոմի և սորտային փորձադաշտերի ագրոնոմների պարտադիր մասնակցությամբ։

5. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ ամեն տարի, դեկտեմբերի 1-ից ոչ ուշ, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին ներկայացնել սորտային սերմերի արտադրության և սորտերի նորացման պլանները ըստ շրջանների, որոնք պետք է կազմվեն Պետական սելեկցիոն կայանի դիրեկտորի, Հացահատիկային կուլտուրաների սորտաստուգման պետական ինստիտուտի և Գոսսորտֆոնդի Հայկական գրասենյակի կառավարչի պարտադիր մասնակցությամբ՝ ՍՍՌ Միության Հողժողկոմատին ի հաստատություն ներկայացվելու համար։

6. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ 1945 թվին ստուգման ենթարկել հացահատիկային կուլտուրաների սորտային ցանքերը շրջանային սերմնաբուծական տնտեսությունների բոլոր հողամասերում, կոլխոզների և սովխոզների սերմնադաշտերում, սելեկցիոն կայանի ցանքերում և կոլխոզների ու սովխոզների ընդհանուր ցանքերի մի մասում՝ ընդամենը 70.240 հեկտար տարածության վրա, այդ թվում 70.000 հեկտար կոլխոզների ցանքերում։

7. Կոլխոզներին իրավունք տալ՝ ստուգվող սերմնային հողամասերը սերմացվի



համար պիտանի չլինելու դեպքում, ստուգողի հետ միասին փոխարինել մի այլ համարժեք հողամասով՝ սերմնային լավագույն հատկություններով և ավելի բարձր բերքատվություն ունեցող ընդհանուր ցանքերից։

Պարզաբանել, որ սերմնադաշտի փոխարինումը թույլատրվում է, որպես բացառություն, յուրաքանչյուր առանձին դեպքում շրջանային գործկոմի հաստատմամբ և կարող է կատարվել ոչ ուշ, քան համապատասխան կուլտուրայի բերքահավաքը սկըսվելուց 10 օր առաջ։

8. Պարտավորեցնել Հողժողկոմատին, շրջսովետների գործկոմների նախագահներին և կոլխոզների վարչությունների նախագահներին՝ սերմնադաշտերում ապահովել դաշտային աշխատանքների բարձրորակ կատարումը ագրոտեխնիկական սահմանված ժամկետներին։ Սերմնադաշտերում ցանքը կատարել շրջանացված սորտերի ընտիր սերմերով։

Կատարել ցանքերի պարտադիր քաղհանում։ Սերմնադաշտերի բերքի հավաքումը կատարել ընդհանուր ցանքերի բերքահավաքից առանձին։ Սերմնադաշտերի բերքի կալսումից ստացված ամբողջ հացահատ-

կը անհապաղ գտնել, կշռել, ձևակերպել ակտերով և պահել հատուկ ամբարներում, թույլ չտալով սորտերի խառնումը:

Պարտավորեցնել ՄՏԿ-ների դիրեկտորներին՝ բոլոր սերմնաբուծական կոլխոզներում դաշտերի մշակումը կատարել առաջին հերթին:

9. Պարտավորեցնել Ալագյազի, Ամասիայի, Ղուկասյանի, Ապարանի, Մարտունու, Բասարգեչարի, Սևանի, Նոր Բայազետի, Ախտայի, Կրասնոսելսկի և Սիսիանի շրջանների շրջսովետների գործկոմների նախագահներին՝ 1945—1946 թ. թ. ապահովել աշնանացան կուլտուրաների փոխանցիկ սերմֆոնդերի կուտակումը կոլխոզներում այն հաշվով, որ վերոհիշյալ շրջաններում աշնանացան կուլտուրաների ցանքերը, որպես կանոն, կատարվեն նախորդ տարվա բերքի սերմերով:

Աշնանացան կուլտուրաների փոխանցիկ սերմֆոնդերի կուտակումը կատարել սերմնադաշտերի բերքից, իսկ սերմնադաշտերից հավաքված բերքը պակասելու դեպքում՝ ի հաշիվ այն հացահատիկի, որը հավաքվել է սորտային ցանքերի ընդհանուր դաշտերից հավաքված հացահատիկով, կոլխոզների կողմից պետության հանդեպ իրենց պար-



տավորությունները կատարվելուց հետո:

10. Պարտավորեցնել Լենինականի պետական սելեկցիոն կայանին՝

ա) 1945 թվին ապահովել 994 ցենտներ էլիտային սերմերի արտադրությունը.

բ) 1945 թվին կազմել սուպերէլիտի ապահովագրական ֆոնդ՝ տարեկան պահանջի 30 տոկոսի չափով, հասցնելով այդ ֆոնդը 1946 թվին սուպերէլիտի սերմերի պահանջի 50 տոկոսին:

11. Հացահատիկային կուլտուրաների լավագույն սորտերը ամենաարագ կերպով բազմացնելու և արմատավորելու, էլիտի սերմերով շրջանային սերմնաբուծական տնտեսությունների սերմնադաշտերն ապահովելու համար, հաստատել էլիտային տնտեսությունների ցանց հետևյալ կոլխոզներում՝

Բասարգեչարի շրջանի Նորակերտ գյուղի Կարմիր Հոկտեմբեր, Աշտարակի շրջանի Ուջան գյուղի Մոլոտովի անվան, Ախտայի շրջանի Ցամտառան գյուղի Հարությունյանի անվան, Վեդու շրջանի Ուեհանլու գյուղի «Աբարան» կոլխոզներում:

12. Կոլխոզներում էլիտա-սերմնաբուծական աշխատանքի ղեկավարությունը հանձնարարել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատի

սորտային վարչությանը, իսկ էլիտի սերմեր աճեցնող կոլխոզներին գիտա-մեթոդական օգնություն ցույց տալու գործը հանձնարարել Լենինականի պետական սելեկցիոն կայանին։

13. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին և Բասարգեչարի, Ախտայի ու Վեդու շրջսովետների գործկոմների նախագահներին՝ կոլխոզների աճեցրած էլիտի բոլոր սերմերը լրիվ հանձնել Գոսսորտֆոնդի պահեստներին։

14. ՍՍՌՄ Ժողկոմսովետի 1945 թվի փետրվարի 24-ի որոշմանը համապատասխան, էլիտի սերմեր աճեցնող կոլխոզներին տալ հետևյալ արտոնությունները՝

ա) առաջին կարգի էլիտի սերմերի յուրաքանչյուր փութը, որ հանձնել է կոլխոզը Գոսսորտֆոնդին՝ ի հաշիվ պարտադիր հանձնումների և բնավարձի, հաշվել մեկ փութ 20 ֆունտ և պարտադիր հանձնումներից ու բնավարձից ավելի հանձնված էլիտի սերմերի յուրաքանչյուր փթի դիմաց Զագոտզեռնոյի պահեստներից տալ 1 փութ 20 ֆունտ սովորական կոնդիցիոն պարենային հացահատիկ.

բ) կոլխոզների և էլիտա-սերմնաբուծական տնտեսությունների արտադրած էլիտա-



յին սերմերի արժեքը վճարել պետական սելեկցիոն կայանների համար սահմանված պայմաններով։

15. Պարտավորեցնել Լենինականի պետական սելեկցիոն կայանին՝ առավել լայն հեռանկարներ ունեցող և բարձր բերքատու նոր ստացված սորտերը ամենաարագ կերպով բազմացնելու և արտադրության մեջ արմատավորելու նպատակով, դրանք պետական սորտաստուգման հանձնելու հետ միաժամանակ, նախնական բազմացման ենթարկել սովխոզներում ու կոլխոզներում,— պայմանավորվելով նրանց հետ,— և արտադրական գնահատական տալ։

Պարտավորեցնել Գոսսորտֆոնդի հայկական գրասենյակին՝ բազմացվող նոր, արժեքավոր սորտերից սերմերը կոլխոզներից ընդունել շրջանային սերմնաբուծական տնտեսությունների համար սահմանված պայմաններով։

Նոր սորտը շրջանացվելուց հետո, պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ կազմակերպել շրջանացված սորտի սերմերի բազմացումը սելեկցիոն կայանում, շրջանային սերմնաբուծական տնտեսություններում ու այլ կոլխոզներում և այդ սերմերը Գոսսորտֆոնդի համար մթերել ոչ

միայն շրջանային սերմնաբուծական տնտեսություններից, այլև այլ կոլխոզներից։

16. Պարտավորեցնել Լենինականի պետական սելեկցիոն կայանին և Հայկական ՍՍՌ-ում Պետական հանձնաժողովի տեսչին՝ սիստեմատիկաբար հրապարակել սելեկցիոն կայանի գիտական նվաճումները և սորտային ցանքերի հողամասերի գործնական տվյալները՝ դրանց հետ կոլխոզներին, սովխոզներին և ագրոնոմիական հասարակայնությանը լայնորեն ծանոթացնելու համար։

17. Կոլխոզների և սովխոզների սերմնադաշտերում ցանելու համար, կոլխոզների բարձրորակ սորտային սերմերի կարիքների անխափան բավարարումն ապահովելու նպատակով՝ պարտավորեցնել Գոսսորտֆոնդի Հայկական գրասենյակին՝ 1945 թվին կազմել սորտային սերմերի պետական ֆոնդ 900 տոննայի չափով, դրանից՝ աշնանացան սերմեր 400 տոննա և գարնանացան՝ 500 տոննա, ինչպես նաև 1945—1946 թ. թ. ստեղծել էլիտային սերմերի երկրորդ սերնդի ապահովագրական ֆոնդ տարեկան պահանջի 30 տոկոսի չափով՝ շրջանային սերմնաբուծական տնտեսությունների, կոլխոզների և սովխոզների սերմնադաշտերն



ապահովելու համար՝ սորտանորացման պլանի համաձայն։

Պարտավորեցնել Հողժողկոմատին՝ մինչև 1945 թվի հունիսի 1-ը Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին հաստատելու ներկայացնել սորտային սերմեր մթերելու պլան՝ ըստ կուլտուրաների, սորտերի և շրջանային սերմնաբուծական տնտեսությունների։

18. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ կազմակերպել սերմնաբույծ տեխնիկներ պատրաստելու վեցամսյա կուրսեր շրջանային սերմնաբուծական տնտեսությունների և սորտային փորձադաշտերի համար, այն հաշվով, որ 1945 թվին պատրաստվի առնվազն 10 մարդ։

Վերոհիշյալ կուրսերն ընդունել միջնակարգ դպրոցի առնվազն 7 դասարանի կրթություն ունեցող անձանց, որոնք ունեն գյուղատնտեսության ասպարեզում աշխատելու գործնական փորձ։

Վեցամսյա կուրսերի բոլոր սովորողներին ապահովել ամսական 150 ռուբլի պետական թոշակով։

---

ԽՆԴՐՈՒՄ ԵՆՔ ՁԵԶ ՀԵՏԱՔՐՔՐՈՂ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ ԳՐԵԼ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ (ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄ, ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ)։ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ ԿՏՊԱԳՐՎԵՆ ՄԵՐ ԲԼՈԿՆՈՏԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

Պատասխանատու խմբագիր՝
**Ս. ԱՐԵՇՅԱՆ**

ՎՖ 00604. Պ. № 334. *Տիրաժ* 5000

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից
թերթերի և ամսագրերի տպարան, Երևան